Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 4 ՓԵՏՐՎԱՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ուղղված Դիմումի մեջ, ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը հանրագումարի բերեցին 1957 թվականին կատարված արդյունավետ աշխատանքը և կոնկրետ օրինակների վրա ցույց տվեցին 1958 թվականին գյուղատնտեսական արտադրանքի զգալի ավելացման գործում չօգտագործված խոշոր ռեզերվների առկայությունը։

Չնայած անբարենպաստ կլիմայական պայմաններին, հատկապես Պովոլժյեի, Հարավային Ուրալի և Ղազախստանի շրջաններում, անցյալ տարի կոլտնտեսականների, ՄՏԿ-ների ու սովխոզների բանվորների, գյուղատնտեսության բոլոր աշխատողների անձնուրաց աշխատանքի շնորհիվ մեր երկիրն ապահովվեց հացահատիկի և մյուս գյուղատնտեսական մթերքների անհրաժեշտ քանակով։ 1957 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը, 1953





թվականի համեմատությամբ, ավել էր 26 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 41 տոկոսով։ 1957 թվականին մոտավորապես նույնքան հացահատիկ է մթերված, որքան 1955 թվականին, իսկ 1953 թվականի համեմատությամբ մթերված է 18 տոկոսով ավելի հացահատիկ։

1957 թվականին խոշոր հաջողությունների հասան մեր երկրի ճակնդեղագործները։ 1956 թվականի համեմատությամբ շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները ավելացել են 100,2 հազար հեկտարով, բերքատվությունը՝ 15 տոկոսով, իսկ համախառն բերքը՝ 69 միլիոն ցենտներով։ Դա թույլ կտա 1957—1958 թվականին ստանալ այնպիսի քանակությամբ շաքար, որպիսին մեր երկիրը չի ստացել դեռ երբեք։

1957 թվականին երկրում, ամբողջությամբ վերցրած կատարվել է բամբակի հումքի մթերման պլանը։

Հացահատիկի արտադրության ավելացումը և կերի բազայի ամրապնդումը ապահովեցին անասնապահության վերելքը երկրում։

1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը երկրում ավելացել է 4 միլիոն 600 հազարով, այդ թվում կովերինը՝ 1 մի-



լիոն գլխով, խոզերի գլխաքանակն ավելացել է 5 միլիոն 900 հազարով, ոչխարներինը՝ 5 միլիոն 400 հազարով։

Մեկ կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում հասել է 1858 կիլոգրամի, իսկ սովխոզներում՝ 2700 կիլոգրամի։ Զգալիորեն ավելացել է կաթի, մսի, բրդի և մյուս մթերքների արտադրությունը։

Մոտակա տարիներին յուրաքանչյուր շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու համար մեր երկրում ծավալված համաժողովրդական շարժումը արդեն 1957 թվականին զգալի արդյունքներ է տվել։ Անցյալ տարի կաթի արտադրությունը մեր երկրում հասել է ԱՄՆ-ում կաթի արտադրության 95 տոկոսին, իսկ յուղի ընդհանուր արտադրությամբ՝ նույնիսկ մի փոքր էլ անցել է։ Այդ բոլորը ցույց տվեցին, որ գյուղատնտեսության աշխատողների խոսքը չի տարբերվում գործից։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումի մեջ բազմաթիվ օրինակներ են բերվում կոլտնտեսությունների և սովխոզների կողմից, անասնաբուծության մթերքների արտադրության ուղղությամբ իրենց պարտավորությունների կատարման մասին։ Դա վկայում է առաջադրված խնդրի

ռեալ լինելու մասին. սոցիալիստական գյուղատնտեսության մեջ եղած մեծ հնարավորությունների և ռեզերվների առկայության մասին։

Լրիվ համոզվածություն կա այն բանում, որ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի արտադրությամբ մենք ունենք բոլոր հնարավորությունները ԱՄՆ-ին հասնելու դեռ 1958 թվականին։

1957 թվականի արդյունքները ցույց են տալիս, որ եղած ռեզերվների ավելի լիակատար օգտագործման դեպքում երկրի շատ շրջաններ մեկ տարվա ընթացքում կարող են մսի արտադրությունն ավելացնել 30—40 և ավելի տոկոսով, և այդպիսով, վճռական ներդրում կատարել մսի արտադրությամբ մոտակա տարիներում ԱՄՆ-ին հասնելու վերաբերյալ համաժողովրդական խնդրի լուծման գործում։

Երկրում անասնաբուծության զարգացման և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները հնարավոր դարձան այն մեծ աշխատանքի շնորհիվ, որ տարվեց կերի բազայի ամրապնդման, ճգիպտացորենի արտադրության զգալի ավելացման շնորհիվ։ Բավական է ասել, որ եթե 1953 թվա-



կանին կոլտնտեսություններն ու սովխոզները պատրաստեցին 32 միլիոն տոննա սիլոս, ապա 1957 թվականին նրանք պատրաստեցին մոտ 90 տոննա սիլոս՝ միջին հաշվով 7 տոննա սիլոս յուրաքանչյուր կովին։ Խտացրած և կոշտ կեր կուտակվել է ավելի շատ, քան անցյալ տարի։ Այս բոլորը բարենպաստ պայմաններ են ստեղծում անասնաբուծության մթերքների արտադրությունը զգալիորեն ավելացնելու համար։

«1957 թվականի արդյունքները ցույց են տալիս,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումի մեջ, — որ մեր գյուղատնտեսությունը շեշտակի վերելք է ապրում։ Ամուր հիմքեր են ստեղծվել հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրության հետագա է՛լ ավելի նշանակալի աճի համար, բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու՝ գյուղատնտեսության աշխատավորների առաջադրած խնդրի հաջող լուծման համար։ Այժմ գործը կախված է մեզանից, մեր կազմակերպվածությունից ու հաստատակամությունից»։

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը իրենց Դիմումի մեջ անհրաժեշտ են համարում կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, ՄՏԿ-ների ու սովխոզների, պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների աշխատողների ուշադրությունը հրավիրել մի շարք կարևոր հարցեր 1958 թվականի ընթացքում լուծելու վրա։

Ինչպես ասված է Դիմումի մեջ. «...գյուղատնտեսության բոլոր աշխատողների ուշադրությունը պետք է բևեռվի արտադրության կազմակերպման տնտեսական կողմի վրա, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերի վրա»։

Հողագործության մեջ որպես գլխավոր խնդիր է մնում բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացումը։ Այդ խնդրի հաջող լուծումը կիրագործվի միայն հողագործության կուլտուրայի բարձրացման բազայի վրա։ Խոսքը, ամենից առաջ, այն մասին է, որպեսզի մասնագետները կոլտնտեսությունների ղեկավարների հետ միասին հասկանան, հանձնարարեն և ապահովեն ճիշտ ցանքաշրջանառությունների արմատավորումը, կազ-



մակերպեն սերմնաբուծություն։ Պլանավորման նոր կարգի պայմաններում հարկավոր է հաշվի առնելով յուրաքանչյուր շրջանի, կոլտնտեսության և սովխոզի բնական ու տնտեսական պայմանները, կազմել գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի զարգացման՝ երկար ժամանակի համար նախատեսված պլան, այն հաշվով, որ տարածության յուրաքանչյուր միավորի վրա ապահովվի մթերքների առավելագույն քանակի արտադրություն, միաժամանակ ծախսելով առավել պակաս աշխատանք և միջոցներ։

Հողագործության մեջ ամբողջ աշխատանքը պետք է այնպես կազմակերպվի, որպեսզի 1958 թվականին ապահովվի հացահատիկի, տեխնիկական կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի, խաղողի և պտուղների արտադրության հետագա ավելացումը։

Դիմումի մեջ մատնանշվում է, որ կարևորագույն պայմաններից մեկը, որը կոլտնտեսությունների ու սովխոզների համար կարճ ժամանակամիջոցում ապահովեց բոլոր տեսակի անասունների գլխաքանակի զգալի ավելացում և մթերատվության բարձրացում, կերի բազայի ամրապնդումն է՝ գլխավորա-

պես եգիպտացորենի ցանքատարածությունների լայն արմատավորման համար։ Եգիպտացորենի հետ միասին հարկավոր է ընդլայնել և բարձրացնել մյուս կերային կուլտուրաների բերքատվությունը։ Այս հարցերը հարկավոր է լուծել ոչ թե շաբլոն կերպով, այլ ելնելով տեղական կոնկրետ պայմաններից։ Կերի բազայի ամրապնդման ամբողջ աշխատանքը այնպես պետք է կազմակերպվի, որ սկսած 1958 թվականից կոլտնտեսություններն ու սովխոզները կարողանային իրենց ապահովել զանազան կերերով ի հաշիվ սեփական արտադրության, որի համար նրանց մոտ կան բոլոր հնարավորությունները։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումի մեջ նշված է, որ մսի և կաթի արտադրության հետագա ավելացման համար կպահանջվի անասունների և թռչունների բոլոր տեսակների զգալի ավելացում՝ գյուղատնտեսական հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց, անասնաբուծության մթերատվության միաժամանակյա բարձրացման հետ միասին։

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը խնդիր են դնում՝ մոտակա 3—4 տարիների ընթացքում գյուղատնտեսական



հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց ունենալ կովերի մոտավորապես հետևյալ գլխաքանակը. կաթնատու զարգացած անասնաբուծության շրջանում (ՌՍՖՍՌ-ի կենտրոնական մարզեր, Ուկրաինայի, Բելոռուսիայի մի քանի մարզեր, Մերձբալթիկա)՝ յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց 20—25 կով, Վրաստանում, Ադրբեջանում, Հայաստանում, Մոլդավիայում՝ 15—20 կով։ Մյուս շրջաններում, որտեղ ոչխարաբուծության և մսատու անասնապահության համար կան հատկապես բարենպաստ պայմաններ, կաթնատու կովերի գլխաքանակը կարող է մի քիչ պակաս լինել։

Մսի արտադրության շեշտակի ավելացման համար կովերի գլխաքանակի զգալի աճի հետ մեկտեղ, անհրաժեշտ է հատկապես լուրջ վերաբերմունք ցույց տալ խոզաբուծության զարգացմանը։ Խոզաբուծությունը հըմտորեն զարգացնելու շնորհիվ կարելի է մսի արտադրությունը մեկ տարում ավելացնել երկու և ավելի անգամ։

Մսի ռեսուրսների ավելացման խոշոր աղբյուր է ոչխարաբուծությունը։ Անհրաժեշտ է անասնաբուծության այդ ճյուղի ամեն

կերպ զարգացման վրա լուրջ ուշադրություն դարձնել, տրովհետև բրդի արտադրության ավելացման ուղղությամբ երկրում եղած վիթխարի հնարավորությունները օգտագործվում են շատ անբավարար։

Տեղերում ամբողջ աշխատանքը պետք է այնպես դրվի, որպեսզի առաջավոր բրիգադների, ֆերմաների, կոլտնտեսությունների և սովխոզների փորձը արագ մասսայականացվի և դառնա բոլորի սեփականությունը։

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը դիմելով կոլտնտեսականներին, կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների բանվորներին, պարտիական, սովետական և գյուղատնտեսական աշխատողներին, հույսով են, որ նրանք բոլոր ջանքերը կգործադրեն, որպեսզի 1958 թվականին նոր, խոշոր հաջողությունների հասնեն գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա վերելքի գործում, գյուղատնտեսության աշխատավորների առաջ քաշած խնդրի լուծման համար մղվող պայքարում, այն է՝ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտ ժամանակներս հասնել և անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներից։

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1958 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ


### Ս. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստրության բյուջետային վարչության պետ


Պետական ամեն մի բյուջե, դա նույն այդ պետության կյանքի յուրատեսակ հայելին է։

Սոցիալիստական պետության բյուջեն արտահայտում է տնտեսության սոցիալիստական սիստեմի առանձնահատկությունները ու առավելությունները և ծառայում է մեր երկրում կոմունիզմի կառուցման գործին։

Մեր երկրում սոցիալիստական շինարարության, ժողովրդական տնտեսության, ազգային կուլտուրայի զարգացման և սովետական մարդու նկատմամբ հոգատարության ցայտուն օրինակ են հանդիսանում միութենական տասնհինգ ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Հայկական ՍՍՌ բյուջեները։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի սեսիայի կողմից հաստատված ռեսպուբլիկայի 1958 թվականի պետական բյուջեում իրենց խոր արտահայտությունն են գտել ՍՄԿՊ XX համագումարի և ՀԿՊ XIX համագումարների որոշումները։

Արդյունաբերական ձեռնարկությունները, կառույցներն ու տնտեսական կազմակերպությունները անմիջականորեն ռեսպուբլիկայի իրավասությանը հանձնելու կապակցությամբ Հայկական ՍՍՌ 1958 թվականի բյուջեն զգալիորեն աճել է, որը եկամուտների գծով կազմում է 2 միլիարդ 584 միլիոն 640 հազար ռուբլի, իսկ ծախսերի գծով՝ 2 միլիարդ 562 միլիոն 732 հազար ռուբլի։ Միայն այս տարի բյուջեի ավելացումը կազմում է 353 միլիոն ռուբլի կամ 16 տոկոս։ Մեծ չափով ընդլայնվել է ռեսպուբլիկայի բյուջեի կապը ժողովրդական տնտեսության ճյուղերի հետ։

1958 թվականի շահույթների այն ընդհանուր գումարը, որ ստացվելու է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհրդի, մինիստրությունների և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների իրավասության տակ գտնվող ձեռնարկություններից ու տնտեսական կազմա-



կերպություններից կհասնի 1 միլիարդ 54 միլիոն ռուբլու, 1957 թվականի 862 միլիոն ռուբլու դիմաց։

Ժողովրդական տնտեսության շահույթներից բյուջեի օգտին մասնահանումների ընդհանուր գումարը ընթացիկ տարում կազմելու է 590 միլիոն ռուբլի։

Ռեսպուբլիկայի այս տարվա, ինչպես նաև անցյալ տարիների, պետական բյուջեում, եկամուտների մեջ գլխավոր տեղը բռնում են սոցիալիստական տնտեսությունից ստացվող միջոցները, որոնք կազմում են 2 միլիարդ 158 միլիոն 900 հազար ռուբլի կամ բյուջեի բոլոր եկամուտների 83,5 տոկոսը։ Բյուջեի եկամուտների ընդհանուր գումարից 1 միլիարդ 900 միլիոն ռուբլին կազմում է սոցիալիստական տնտեսությունից ստացվող շրջանառության հարկը և շահույթներից մասնահանումները։ Եվ դա հասկանալի է։ Մեր պետության էկոնոմիկական հիմքը հանդիսանում է տնտեսության սոցիալիստական սիստեմը, արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը, այստեղից էլ պարզ է դառնում այն, որ բյուջեի եկամուտների գերակշռող մասը ստացվում է սոցիալիստական տնտեսությունից։

1958 թվականի բյուջեում բնակչության
կողմից մուծվող հարկերի գումարը կազմում
է 131 միլիոն ռուբլի, կամ բյուջեի ամբողջ
եկամուտների միայն 5,1 տոկոսը։
Մեր ռեսպուբլիկայի պետական բյուջեի
ծախսերի գերակշիռ մասը, որը սերտո-
րեն կապված է սոցիալիստական տնտե-
սության բարձրացման հետ, հիմնականում
ուղղված է մի նպատակի՝ ժողովրդի նյու-
թական մակարդակի բարձրացմանը։
1958 թվականի բյուջեն անցյալ տարվա
բյուջեից տարբերվում է նրանով, որ ռես-
պուբլիկայի բյուջեի հաշվին է ֆինանսավոր-
վելու ծանր արդյունաբերությունը, որն առաջ
ֆինանսավորվում էր միութենական բյու-
ջեով։ Ժողովրդական տնտեսության ճյուղերի
ֆինանսավորումը ընթացիկ տարում կազմում
է 2 միլիարդ 138 միլիոն 200 հազար ռուբլի,
որից բյուջեի հաշվին 1 միլիարդ 150 միլիոն
ռուբլի, կամ ամբողջ բյուջեի ծախսերի 44,9
տոկոսը։ Միայն ժողտնտխորհի ձեռնարկու-
թյունների ֆինանսավորման գծով ծախսերը
վերջիններիս սեփական միջոցների հետ
միասին, կազմում են 1 միլիարդ 96 միլիոն
ռուբլի։
Ժողովրդական տնտեսության այդպիսի
մեծ գումարների հասնող ֆինանսավորումն



ուղղված է ծանր արդյունաբերության զար-
գացման, տեխնիկական պրոգրեսի ուժեղաց-
ման, գյուղատնտեսական մթերքների և լայն
սպառման ապրանքների արտադրության
ընդլայնման, կոմունալ բարեկարգման ձեռ-
նարկումների, ինչպես նաև բնակարանային
շինարարության նշանակալից ավելացման
գործին։ Բավական է ասել, որ ժողովրդական
տնտեսության վրա կատարվող ծախսումնե-
րից 993 միլիոն ռուբլի օգտագործվելու է
կապիտալ ներդրումների ֆինանսավորման
վրա։
1958 թվականին բնակարանային շինարա-
րության վրա ծախսվելու է 263 միլիոն ռուբ-
լի։ Այդ միջոցներով և բանկային վարկի օգ-
նությամբ ռեսպուբլիկայում կառուցվելու է
346 հազար քառակուսի մետր բնակելի տա-
րածություն։
Երկրաբանական-հետախուզական աշխա-
տանքների համար այս տարի տրամադրվում
է 89 միլիոն ռուբլի։
Անդադրում հոգատարությունը ժողովրդի
նյութական և կուլտուրական մակարդակի
բարձրացման մասին ցայտուն կերպով ար-
տահայտված է սոցիալ-կուլտուրական ձեռ-
նարկումների վրա կատարվող այն հսկայա-
կան ծախսերի մեջ, որ նախատեսված են

բյուջեով։ Դրանք այն ծախսերն են, որ կատարվելու են դպրոցների, միջին և բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտա-հետազոտական հիմնարկների, գրադարանների, ակումբների, մանկապարտեզների, մանկամսուրների ու հիվանդանոցների պահպանման և թոշակների վճարման ուղղությամբ։ Այդ բոլորի համար բյուջեով նախատեսված է 1 միլիարդ 228 միլիոն 600 հազար ռուբլի կամ բյուջեի բոլոր ծախսումների 47,9 տոկոսը։ 1957 թվականի համեմատությամբ սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների համար կատարվող ներդրումները ավելացել են 143 միլիոն 700 հազար ռուբլով կամ 13,2 տոկոսով։

Այսպիսի խոշոր միջոցների ներդրումները խոսում են այն մասին, որ սովետական երկրում պետական օրգաններն ունեն նաև կուլտուր-դաստիարակչական աշխատանքի ֆունկցիաներ։ Այդպիսի ֆունկցիաներ բուրժուական պետությունները չեն իրագործում։

Սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների համար հատկացված 1 միլիարդ 228 միլիոն 600 հազար ռուբլի ընդհանուր գումարից լուսավորության գործի համար հատկացված է 696 միլիոն ռուբլի, այդ թվում հանրակրթական բոլոր տեսակի դպրոցների, երաժշտա-



կան դպրոցների և դպրոցներին կից գիշերօթիկների պահպանման համար 318 միլիոն ռուբլի, մանկապարտեզների և մանկական տների պահպանման համար 58 միլիոն ռուբլի, երեխաների և պատանիների մեջ կատարվող դաստիարակչական ու հասարակական աշխատանքների համար, որը հիմնականում կատարվում է դպրոցից դուրս պիոներական պալատների ու տների միջոցով, սպորտ դպրոցներում և տուրիստական կայաններում, նախատեսված է մոտ 8 միլիոն ռուբլի։ 1958 թվականին ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում պետք է ընդունվեն 4413 մարդ։ Միայն հանրակրթական դպրոցներում սովորում են ավելի քան 274 հազար մարդ։

Կուլտուր-լուսավորական հիմնարկների պահպանման համար նախատեսված է այս տարի ծախսել 37 միլիոն ռուբլի։ Միայն բյուջեի հաշվին Հայկական ՍՍՌ-ում պահպանվելու են 623 քաղաքային, շրջանային, մանկական և գյուղական գրադարաններ և ավելի քան 1080 ակումբային հիմնարկներ։ Որպեսզի պատկերացնել կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցի զարգացման այդ հսկայական աճը մեր ռեսպուբլիկայում, բավական է ասել, որ 1914 թվա-





կանին ամբողջ Ռուսաստանում ակումբների թիվը եղել է 200 հատ, այն էլ միայն քաղաքներում։

Ժողովրդական տնտեսության համար բարձրագույն և մասնագիտական հատուկ միջնակարգ դպրոցներում մասնագետ կադրեր պատրաստելու համար նախատեսված է ավելի քան 101 միլիոն ռուբլի, որից շուրջ 29 միլիոն ռուբլի հատկացվելու է սովորողներին թոշակ վճարելու համար։ Ավելի քան 117 միլիոն ռուբլի նախատեսված է սովետական գիտության հետագա զարգացման համար։

Արվեստի և ռադիոհաղորդումների գծով նախատեսված է ծախսել 32 միլիոն ռուբլի, պարբերական մամուլի համար՝ 18 միլիոն ռուբլի։

Ժողովրդական առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի զարգացման համար ծախսերը ընթացիկ տարում կազմում են 292 միլիոն ռուբլի, որը 1957 թվականի համեմատությամբ աճում է 13 տոկոսով։ Այդ գումարի մեծ մասը ծախսվելու է բուժպրոֆիլակտիկ հիմնարկների, հիվանդանոցների, դիսպանսերների, սանատորիաների, մանկամսուրների վրա։ Հայկական ՍՍՌ-ում ներկայումս յուրաքանչյուր 10 հազար



բնակչին ընկնում է 66 մահճակալ, 1957 թվականի 58 մահճակալի դիմաց։

1958 թվականին սոցիալական ապահովության համար նախատեսված է 240 միլիոն ռուբլի, որից միայն կենսաթոշակներ վճարելու համար 204 միլիոն ռուբլի, որը 148 միլիոն ռուբլով ավել է մինչև կենսաթոշակների մասին եղած օրենքի հրատարակումը։

Պետական ապարատի պահպանման համար բյուջեով նախատեսված է 100 միլիոն ռուբլի, որը կազմում է բյուջեի ամբողջ ծախսերի միայն 3,9 տոկոսը։

1958 թվականի Պետական բյուջեն ամբողջովին ծառայելու է ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման գործին և միաժամանակ նպաստելու է հայ ժողովրդի նյութական մակարդակի էլ ավելի բարձրացմանը։

Միայն սոցիալիստական հասարակարգն է ընդունակ պետական միջոցներն ուղղել արտադրողական ուժերի հետագա զարգացման և ամբողջ հասարակության անընդհատ աճող նյութական ու կուլտուրական պահանջմունքները առավելագույն չափով բավարարելու համար։

---

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

ՎԻԿՏՈՐԻԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ

1910 թվականին Կոպենհագենում տեղի ունեցած կին սոցիալիստների կոնֆերենցիան որոշեց ամեն տարի մարտի 8-ը նշել որպես կանանց միջազգային համերաշխության օր։ Այդ ժամանակվանից ի վեր, բոլոր երկրների աշխատավորները տոնում են կանանց միջազգային օրը։

Սովետական ժողովուրդն այդ տրադիցիոն տոնն այս տարի նշում է քաղաքական ու աշխատանքային նոր վերելքի պայմաններում։ Մեր երկրի աշխատավորները հաջողությամբ ավարտեցին 1957 թվականի ժողովրդա-տընտեսական պլանը։ Անցած տարին մարդկության պատմության մեջ մտավ որպես դեպի տիեզերք արձակված Երկրի՝ աշխարհում առաջին արհեստական արբանյակների ստեղծման տարի։ Այժմ սովետական մարդիկ նոր եռանդով լծվել են վեցերորդ հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքների կատարման ու գերակատարման գործին։ Այս օրերին մեր մեծ Հայրենիքի քաղաքներում ու գյու-



ղերում լայնորեն ծավալվում է երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստությունը։

Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, Հայրենիքի բարգավաճման ու հզորության ամրապնդման գործին ակտիվորեն մասնակցում են կանայք, որոնք մարդկության պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում, սովետական իշխանության շնորհիվ դարձել են հասարակության լիիրավ անդամներ, կոմունիզմի անխոնջ կառուցողներ։

«Սովետական իշխանությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— որպես աշխատավորների իշխանություն, իր գոյության հենց առաջին ամիսներին ամենավճռական հեղաշրջում կատարեց կնոջը վերաբերող օրենսդրության մեջ։ Սովետական ռեսպուբլիկայի մեջ քարը քարի վրա չմնաց այն օրենքներից, որ կնոջը դնում էին ենթակա դրության մեջ»։

Հիրավի, միայն երկու տարվա ընթացքում սովետական իշխանությունը կնոջ ազատագրման համար այնքան շատ բան արեց, որքան չէին արել ամբողջ աշխարհի առաջավոր բոլոր պետությունները միասին՝ 130 տարվա ընթացքում։

Սովետական հասարակարգը ոչ միայն ա-

զատագրեց կանանց շահագործման կապանքներից, այլև ստեղծեց լայն հնարավորություններ նրանց ստեղծագործական միտքը, կազմակերպչական տաղանդն ու ունակությունները դրսևորելու պետական, տնտեսական, կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։

Այժմ մեզ մոտ չկա ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի որևէ բնագավառ, որտեղ կանայք չաշխատեն։

Արդյունաբերության մեջ աշխատողների 45 տոկոսը կանայք են։ Հազարավոր կանայք ձեռնարկությունների առաջավորներ են, աշխատանքի պրոգրեսիվ մեթոդների նախաձեռնողներ, ռացիոնալիզատորներ, նրանցից հարյուր հազարավորներ ֆաբրիկաներում ու գործարաններում աշխատում են որպես ինժեներներ ու տեխնիկներ։ Մեր ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկություններում կանայք կազմում են բոլոր աշխատողների ավելի քան քառասուն տոկոսը։ Լայնորեն հայտնի են Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի նորարար Էմմա Մկրտչյանի, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան Տեքստիլ կոմբինատի առաջավոր բանվորուհի Աստղիկ Առաքելյանի, Երևանի Ապակու տարայի գործարանի դիրեկտոր,



ինժեներ Մարիա Բաբաջանյանի և շատ ուրիշների անունները։

Առողջապահության և ժողովրդական կրթության բնագավառներում կանայք մեծամասնություն են կազմում։ Հայաստանում 3117 բժիշկներից 2054-ը կանայք են։ 64 կանանց շնորհված է ռեսպուբլիկայի վաստակավոր բժշկի կոչում, մոտ 350 կանայք պարգևատրվել են «Առողջապահության գերազանցիկի» կրծքանշանով։ Ավելի քան մեկ միլիոն կանայք իրենց ուժերն ու գիտելիքները նվիրաբերում են աճող սերնդի դաստիարակության ազնիվ գործին։ Հայաստանում ուսուցիչների 52,6 տոկոսը կանայք են։

Սովետական կանանց առջև անարգել ճանապարհ է բացված դեպի գիտությունը, գրականությունն ու արվեստը։

Նախառևոլյուցիոն Ռուսաստանում կանանց մոտ երկու երրորդ մասը անգրագետ էր, գրագետ կանանց թիվը երեք անգամ պակաս էր տղամարդկանց համեմատությամբ, իսկ այժմ բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների կեսից ավելին կանայք են։ Նրանք կազմում են բարձրագույն կրթությամբ մասնագետների 53 տոկոսը։ Գիտության զանազան ճյուղերում բեղմնավոր աշխատանք են կատարում մոտ

իննսուն հազար կանայք։ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի ինստիտուտներում գիտաշխատողների 40 տոկոսը կանայք են։ Սովետական Հայաստանում գիտության բնագավառում աշխատում է մոտ ութ հարյուր կին։

Բոլորին հայտնի են բիոլոգիական գիտությունների դոկտոր Դարիա Բաբայանի, քիմիական գիտությունների դոկտոր Արաքսիա Բաբայանի, բժշկական գիտությունների դոկտորներ Վերգինե Միքայելյանի, Ալմա Քաթանյանի, Աշխեն Հարությունյանի անունները։

Սովետական կանայք խոշոր ուժ են նաև սոցիալիստական գյուղատնտեսության մեջ։ Տասնյակ հազարավոր կանայք վարում են տրակտորներ ու կոմբայններ, ղեկավարում կոլտնտեսություններ, անասնապահական ֆերմաներ, բրիգադաներ ու օղակներ։ Կոլտնտեսային գյուղի աշխատավորուհիները ակտիվորեն մասնակցում են այն մեծ պայքարին, որ մղվում է մեր երկրում յուրաքանչյուր շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու պարտիայի առաջադրած խնդրի կատարման համար։

Սովետական Կոնստիտուցիան կանանց



շնորհել է ոչ միայն ընտրելու, այլև ընտրվելու իրավունք։ Մեծ Լենինը աշխատավորներին սովորեցնում էր, կանանց լայնորեն ներգրավել պետության կառավարման գործում։ Լենինյան պատգամն այժմ իրականություն է դարձել։ Սովետական ժողովրդի 280 լավագույն դուստրեր ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են։ Երկու հազար կանայք հանդիսանում են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ։ Ավելի քան կես միլիոն կին ընտրվել են աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներում։ ՍՍՌՄ և Միութենական ռեսպուբլիկաների կառավարություններում հարյուրից ավելի կանայք պետական խոշոր պաշտոններ են գրավում։

Մեր ռեսպուբլիկայում Գերագույն Սովետի և տեղական Սովետների դեպուտատների 35 տոկոսը կանայք են։ Հազարավորներ են աշխատում տեղական Սովետներին կից մշտական հանձնաժողովներում։

Այժմ Հայաստանի աշխատավորները մեծ սիրով ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ են առաջադրել իրենց արժանավոր դուստրերին, երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանի դեպուտատության թեկնածուներ են առաջադրված

Երևանի ժամացույցի գործարանի անվանի բանվորուհի Ռոզա Տեր-Աստվածատրյանը, կուլտուրայի աշխատողների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեի նախագահ Մարգարիտա Դավթյանը, Լենինականի տեքստիլ կոմբինատի մանվածքային ֆաբրիկայի առաջավոր բանվորուհի Աստղիկ Առաքելյանը, ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Տաթևիկ Սազանդարյանը, Էջմիածնի շրջկենտրոնի կոլտնտեսության բրիգադիր, անվանի բամբակագործուհի Մարիամ Եղիազարյանը, Ախուրյանի շրջանից ճակնդեղի բարձր բերքի վարպետ, օղակավարուհի Լուսանուշ Մունջուլյանը, Ստեփանավանի Ստալինի անվան դպրոցի ուսուցչուհի Հերսիկ Հակոբյանը, Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության օղակավարուհի Նոյեմ Եղիազարյանը, Շամշադինի շրջանի Զորաթան գյուղի կոլտնտեսության անվանի ծխախոտագործուհի Վարսենիկ Ապերյանը։

Մեր Հայրենիքը բարձր է գնահատում իր դուստրերի անձնուրաց աշխատանքը։ Ավելի քան մեկ միլիոն սովետական կանայք՝ բանվորուհիներ, կոլտնտեսուհիներ, ուսուցչուհիներ, գիտության ու արվեստի գործիչներ պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու



մեդալներով։ Մոտ երկու հազար հինգ հարյուր կանայք արժանացել են Սովետական Միության Հերոսի և Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։ Խոպան հողերի յուրացման համար պարգևատրվածների թվում կան շատ կանայք։

Հայաստանում շքանշաններով ու մեդալներով պարգևատրված կանանց թիվը հասնում է մոտ ութ հազարի, նրանցից 65-ը արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդուլ հոգատարություն են ցուցաբերում կանանց նկատմամբ։ Ամեն տարի հսկայական միջոցներ են հատկացվում մայրության ու մանկության պահպանության համար։ Ավելի քան հիսուն հազար կանայք կրում են «Հերոսուհի մայր» պատվավոր կոչումը, հինգ և կես միլիոնից ավելի կանայք պարգևատրվել են «Մայրության փառք» շքանշանով և «Մայրության մեդալ» մեդալով։ Կանանց նկատմամբ հոգատարության վառ ապացույց են հղիության և ծննդաբերության արձակուրդների տևողության ավելացումը, մանկամսուրների, մոր ու մանկան կոնսուլտացիաների ցանցի ընդլայնումը, գիշերօթիկ դպրոցների և ցերեկօթիկ

խմբերի կազմակերպումը։ Այդ միջոցառումները նախատեսված էին ՍՄԿՊ 20-րդ համագումարի պատմական որոշումներում։

Հիշատակության արժանի է այն փաստը, որ ցարական Ռուսաստանում կանանց 95 տոկոսը ծննդաբերում էր առանց բժշկական օգնության և ամեն տարի երեսուն հազար կանայք մեռնում էին ծննդաբերությունից։ 1913 թվականին ամբողջ երկրում հաշվվում էր 6.824 ծննդաբերական մահճակալ։ Ադրբեջանում, Հայաստանում, Ղազախստանում և Կիրգիզիայում չկար և ոչ մի ծննդատուն։

Այժմ մեր երկրում կանանց սպասարկում են յոթ հազար բժշկական հիմնարկներ, որտեղ աշխատում են 21 հազար բժիշկներ և 152 հազար միջին բուժանձնակազմ։ ՍՍՌՄ-ում նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ 14 անգամ նվազել է ծննդաբերության հետևանքով առաջացող մահացությունը, հիսուն անգամ աճել ծննդաբերական մահճակալների թիվը։ Երկիրը մայրերին ու երեխաներին տալիս է լավագույն ամեն ինչ։ Տարեցտարի ավելի ու ավելի շատ գումարներ են ծախսվում դպրոցների, մանկական թատրոնների, պիոներական պալատների ու ճամբարների, մանկապարտեզների ու մանկամսուրների շինարարության համար։



Ամեն տարի հինգ և կես միլիոն երեխաներ իրենց ամառային հանգիստն են անցկացնում մանկական առողջարաններում ու պիոներական ճամբարներում։

Սովետական Միության կանանց հետ միասին իսկական իրավահավասարություն, երջանկություն են վայելում մեծ Չինաստանի և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների կանայք։ Հետևելով սովետական կանանց օրինակին, նրանք իրենց ուժերը նվիրաբերում են նոր կյանքի կառուցման մեծ գործին։ Այդ երկրներում ևս գնալով աճում են հատկացումները մոր ու մանկան պահպանության համար, ավելանում է դպրոցների, մանկապարտեզների, առողջապահական հիմնարկների թիվը։

Ընդլայնվում է կանանց միջազգային շարժումը խաղաղության, երեխաների պաշտպանության և ժողովուրդների բարեկամության համար։

Կանանց միջազգային շարժումն ունի իր մարտական կենտրոնը՝ Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան, որը միավորում է աշխարհի 90 երկրների ավելի քան երկու հարյուր միլիոն կանանց։ Այդ շարժման առաջին շարքերում են ընթանում Սովետական Միության և ժողովրդական դեմոկրա-

տիայի երկրների կանայք: Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան հաստատակամ պայքար է մղում կանանց դրության բարելավման, նրանց տնտեսական ու քաղաքական իրավահավասարության, երեխաների պաշտպանության համար:

Սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերի երկրների ժողովուրդների կյանքը կենդանի օրինակ է կապիտալիստական և գաղութային երկրների կանանց համար:

Այդ երկրներում ոտնահարվում են կանանց իրավունքները: Ընտրական իրավունքը նույնիսկ այնտեղ, որտեղ նա հռչակված է օրենքով, կանանց լայն մասսաների համար սահմանափակված է գույքային, կրթական և այլ ցենզերով:

Կանանց միջազգային օրը ամբողջ աշխարհի կանայք նորից կցուցադրեն իրենց վճռականությունը պայքարելու ընդդեմ պատերազմի, հանուն խաղաղության, հանուն կանանց իրավունքների պաշտպանության:

Սովետական կանայք իրենց ողջ ուժերն խսպաս դնելով կոմունիզմի կառուցման մեծ գործին, այսուհետև ևս ջերմորեն կաջակցեն Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականությանը:

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱՌԱՋԻՆ ՏԵՂԱՄԱՍԻ ԱԳԻՏՊՈՒՆԿՏԸ

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ընտրողների լայն շրջանում բուռն հետաքրքրություն է առաջ բերել Երևանի № 1 ընտրական տեղամասի ագիտպունկտը: Այստեղ ամեն օր ընտրողները կարդում են թարմ թերթեր, ամսագրեր, բրոշյուրներ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի, նրա դեմոկրատական սկզբունքների, մեր Հայրենիքի տնտեսական ու քաղաքական դրության և շատ ուրիշ հարցերի մասին:

Ագիտ-պունկտի աշխատանքները ավելի են աշխուժանում հատկապես երեկոները երբ բանվոր-ծառայողները վերադառնում են աշխատանքից: Ագիտպունկտում բացի թերթեր ու ամսագրեր, բրոշյուրներ ու գրքեր կարդալուց, ընտրողները երեկոյան լսում են հեռուստատեսային հաղորդումներ և դիտում կինոնկարներ: Ագիտպունկտ ներս մտնելիս աչքի է ընկնում մաքուր ու ճաշակով գրված պատին փակցված ագիտպունկտի աշխատանքային պլանը: Այստեղ մինչև ուշ

*երեկո ամեն օր ագիտատորներից և տեղամասի ընտրական հանձնաժողովի անդամներից մեկական հոգի հերթապահում են, նրանք պատասխանում են ընտրողների հարցերին։ Ընտրողների մեծ մասը Կիրովի անվան գործարանի աշխատողներն են ու նրանց ընտանիքների անդամները։ Բացի այդ, ագիտպունկտում փակցված է ընտրողներին հետաքրքրող հարցերի արկղ։ Ընտրողներին շատ հաճախ հետաքրքրում է գործարանի պատմության, նրա նվաճումների, զարգացման հեռանկարների, բանավանի հետագա բարեկարգման և բազմաթիվ այլ հարցեր։ Եվ որպեսզի ագիտատորները այս բոլոր հարցերին կարողանան կոնկրետ ու սպառիչ պատասխան տալ, ագիտպունկտում կան փաստացի տվյալներ գործարանի անցած ուղու, կոլեկտիվի նվաճումների, բանվորների կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու մասին։*

*Երբ ծանոթանում ես ագիտպունկտի աշխատանքի պլանին, զգում ես որ այն բովանդակալից է ու նպատակասլաց։ Այստեղ բացի սեմինար պարապմունքներից ու ագիտատորների հետ անցկացվող խորհրդակցություններից նախատեսված են և ընտրողների համար հաջողությամբ տեղի են*



*ունենում զրույցներ, զեկուցումներ, ինքնագործ խմբերի ելույթներ, կոլեկտիվ կինոդիտումներ, արվեստի և գրականության գործիչների հետ հանդիպումներ և այլն։ Պլանը կազմված է ամբողջ ընտրությունների ժամանակաշրջանի համար, բայց այն չի խանգարում ագիտպունկտին աշխատանքը բնակչության շրջանում դարձնելու ավելի հետաքրքիր, ավելի աշխույժ։ Ընդհակառակը, այն ուղղություն է տալիս և կազմակերպվածություն մտցնում գործի մեջ։*

*Ինչպես տեսնում ենք ագիտպունկտի կողմից ձեռնարկվող և անցկացվող միջոցառումները մեծ հետաքրքրություն են առաջ բերել ընտրողների շրջանում, որոնք մեծ սիրով ընտրական պունկտ են գալիս լսելու զրույցներ, զեկուցումներ, հանդիպելու ռեսպուբլիկայի անվանի մարդկանց հետ։ Դրանով չի սահմանափակվում ագիտպունկտի աշխատանքը։ Ագիտատորները սիստեմատիկաբար գնում են թաղամաս և զրույցներ ունենում ընտրողների հետ։ Բավական է նշել, որ այս օրերին 60 և ավելի ագիտատորներ զրույցներ են կազմակերպել ընտրողների շրջանում։ Նրանք ընտրողներին բացատրել են ՍՍՌՄ Կոնստիտուցիան, քաղաքացիների իրավունքները և պարտակա-*

նությունները, ՍՍՌՄ ներքին ու արտաքին
քաղաքականության բազմաթիվ հարցեր և
այլն: Ագիտատորները մեծ աշխատանք են
տարել հատկապես ՀԿԳ 19-րդ համագումա-
րի և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի
6-րդ սեսիայի նյութերի մասսայականաց-
ման ուղղությամբ: Այժմ նրանք ընտրողնե-
րին ծանոթացնում են դեպուտատության
թեկնածուներ Ա. Ի. Միկոյանի և Ս. Հ.
Թովմասյանի կենսագրությունների հետ:

Ընտրական տեղամասի բնակիչները շատ
լավ ճանաչում են իրենց ագիտատորներին,
նրանց սիրով են ընդունում և ունկնդրում:
Այս տեսակետից ընտրողները լավ ճանա-
չում են ագիտատոր Լիպարիտ Ջաթինյանին:
Տնային տնտեսուհիներից մի քանիսը օրերս
դիմեցին իրենց ագիտատորին, թե գործա-
րանը ինչ է անելու առաջիկայում բնակարա-
նային շինարարության ուղղությամբ: Ագի-
տատոր Ջաթինյանը մանրամասնորեն ու-
սումնասիրելով շինարարական աշխատանք-
ների ընթացքը, նրա հեռանկարները, հա-
տուկ զրույց ունեցավ ընտրողների հետ՝
«Կոմունիստական պարտիայի և Սովետական
կառավարության հոգատարությունը ժողո-
վրդի նյութական-կուլտուրական մակար-
դակի բարձրացման ուղղությամբ» թեմայով:



Նշելով Սովետական կառավարության և
Կոմունիստական պարտիայի մի շարք միջո-
ցառումները ցածր վարձատրվող աշխա-
տողների աշխատավարձի և թոշակների
բարձրացման մասին, ագիտատորը կանգ է
առնում և կոնկրետ փաստերով ցույց տա-
լիս, թե վերջին 4 տարում ինչ փոփոխու-
թյուններ են տեղի ունեցել իրենց բանվա-
նում՝ 3-րդ մասում: Այսպես՝ 4 տարվա ըն-
թացքում կառուցվել են մի շարք բնակելի
տներ: Միայն անցյալ տարի 35 ընտանիք
տեղափոխվեցին նոր բնակարաններ, իսկ
այս տարի հունվարին՝ 45 ընտանիք:

Այնուհետև ագիտատորը մանրամասն կեր-
պով պատմում է այն մասին, որ բնակելի
տների ընթացիկ և կապիտալ վերանորոգ-
ման համար միայն գործարանը ծախսել է
ավելի քան 6 միլիոն ռուբլի: Նա հաղորդում
է ունկնդիրներին և այն մասին, որ շուտով
հին ակումբի փոխարեն բանավանը կունե-
նա նոր ու գեղեցիկ ակումբ: Մեծ թափ է
ստանում բնակարանային շինարարությունը:
Այժմ կառուցվում է 4 բնակելի շենք, 500
բնակարանով: Սկսվել է նաև գործվածների
օրինակով 2 շենքի կառուցումը, յուրաքան-
չյուրը մոտ 24 բնակարանով:

Ընտրողների հիշողության մեջ երկար

կմնա այն ջերմ հանդիպումը, որ կազմակերպել էր ագիտպունկտը գրողներ՝ Գեղամ Սարյանի, Սարմենի, ռեսպուբլիկայի ժողովրդական արտիստներ՝ Թաթևոս Սարյանի, Արուս Ասրյանի և ուրիշների հետ։ Քիչ չեն կարդացվել հետաքրքիր զեկուցումներ։ Այսպես՝ վերջերս պատմական գիտությունների թեկնածու Գ. Գալոյանը ագիտպունկտում կարդաց դասախոսություն՝ ՍՍՌՄ ներքին և արտաքին քաղաքականության մասին։

Ագիտպունկտի աշխատանքի դրական կողմերից մեկն էլ այն է, որ այստեղ ագիտացիոն-բացատրական լուրջ աշխատանք է կատարվում նաև կանանց և առաջին անգամ ընտրողների լայն շրջանում։

Ագիտպունկտն ունի նաև իր թերթը՝ «Բոլորս դեպի ընտրությունները» խորագրով, որտեղ պարբերաբար հանդես են գալիս ընտրողները և ագիտատորները։

Իհարկե ագիտպունկտի աշխատանքներում դեռևս կան թերություններ, որոնք պետք է առաջիկայում վերացնել։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԸ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ՕՐԵՐԻՆ

Ի. ԱՂԱՋԱՆՅԱՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կապակցությամբ վերջերս Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի պարտիական կոմիտեն վերանայեց ագիտատորների կազմը, այն համալրեց ագիտացիոն աշխատանքի լավ փորձ ունեցող ընկերներով։

Այժմ կոմբինատի 75 ագիտատորներ ընտրողների լայն շրջանում քաղաքական-բացատրական աշխատանք են տանում։ Նրանք լավ գիտենալով ձեռնարկության էկոնոմիկան, իրենց ամենօրյա ագիտացիոն զրույցների նյութ են դարձնում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և մանավանդ ընտրությունները արտադրական նոր հաջողություններով դիմավորելու հարցերը։

Այժմ կոմբինատում զգալիորեն ավելացել է արտադրանքի բոլոր տեսակների թողարկումը։ Կոմբինատի կոլեկտիվը պայքարում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները

դիմավորել առաջին եռամսյակի պլանները գերակատարած։

Պղնձի ռաֆինացման ցեխում հենց որ ավարտվում է աշխատանքային հերթափոխը, վայրբբասի բաժանմունքի աշխատողները հավաքվում են ագիտատոր Արարատ Հարությունյանի մոտ։ Նա ձուլողներին հետաքրքիր նորություններ է հաղորդում պարտիայի ու կառավարության որոշումներից ու ժամանակակից միջազգային դրությունից։

Օրերս ագիտատոր Հարությունյանն իր հերթական ագիտացիոն զրույցը նվիրեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին։

— ՍՍՌՄ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից մինչև այս ընտրությունները ընկած ժամանակաշրջանում,— ասաց նա,— խոշոր իրադարձություններ են տեղի ունեցել մեր կոմբինատի կյանքում։ Ընդլայնվել են արտադրական տարածությունները, կատարելագործվել են տեխնոլոգիական պրոցեսները, արտացոլիչ վառարանի և կոնվերտորային բաժանմունքներում ավտոմատացման են ենթարկվել ջերմային ռեժիմն ու օդի մատակարարումը, որով զգալիորեն արագացվել է ձուլման պրոցեսը։

— Ընթացիկ հնգամյակում,— շարունա-



կում է ագիտատորը,— պղնձաքիմիական կոմբինատում մոտ 2,3 տոկոսով աճելու է արտադրանքի տեսակների թողարկումը։ Նախորդ տարվա համեմատությամբ այս տարի թողարկվելու է 5,5 տոկոսով ավելի շատ պղինձ, 11 տոկոսով աճելու է ծծմբաթթվի ու պղնձարջասպի թողարկումը։ Զգալիորեն կավելացվի ռաֆինացված պղնձի ու հանքային պարարտանյութերի թողարկումը։ Այդ առաջադրանքների հաջող կատարման համար կառուցման ընթացքի մեջ է և առաջիկա ամիսներում շահագործման կհանձնվի պղընձարջասպի նոր խոշոր ցեխը, որը հագեցված կլինի ժամանակակից առաջնակարգ տեխնիկայով։ Բացի այդ, շահագործման կհանձնվի ծծմբաթթվի ցեխում կառուցվող նոր վառարանը, որը պղնձի գրանալներ է մատակարարելու պղնձարջասպի ցեխին։

— Այնուհետև,— շարունակում է իր զրույցը ագիտատորը,— շինարարական մոնտաժային վարչության Ալավերդու տեղամասը ձեռնարկելու է պղնձի ռաֆինացման ցեխի էլեկտրոլիզի երկրորդ հերթի շինարարությունը, որի վրա ծախսվելու է 2 միլիոն ռուբլի։

Լուրջ աշխատանքներ են կատարվել բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ուղղությամբ։ Մի-

այն անցած տնտեսական տարում շահագործման են հանձնվել 3 խոշոր բնակելի շենքեր և ձուլողների կուլտուրայի պալատը, իր կինոդահլիճով, գրադարանով, խաղասենյակներով, հանդերձասրահով և այլ հարմարանքներով։

Զրույցի վերջում ունկնդիրները մի շարք հարցեր տվեցին ագիտատորին, որոնց նա սիրով պատասխանեց։

Սովետական Միության Գերագույն Սովետի առաջիկա ընտրությունների մասին հետաքրքիր զրույցներ են անցկացնում ագիտատորներ Մ. Հայրապետյանը (պղնձի ռաֆինացման ցեխում), Վ. Հարությունյանը (ձուլարանի ցեխում), Ս. Բաբայանը (մեխանիկական ցեխում), Ս. Սոխակյանը (պղնձարջասպի ցեխում) և ուրիշները։

Նախընտրական այս եռուն օրերին ձուլողներն ու քիմիագործները արտադրական պլանների գերակատարման լավագույն օրինակներ են տալիս։

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՐՏ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

### Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դիմումը բոլոր ընտրողներին՝ բանվորներին և բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, սովետական ինտելիգենցիային, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 9-ի համարում։

Պարտիան կոմունիզմի նոր հաղթանակների է կոչում, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 11-ի համարում։

Սոցիալիստական լայն մրցություն ի պատիվ ընտրությունների, «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի առաջնորդողը։

### 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

#### Գրականություն

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան (*հիմնական օրենք*)։

Կանոնադրություն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների:

Կոմունիզմի տեսանելի գծերը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 2-ի համարում։*

Սովետական դեմոկրատիան իսկական ժողովրդական դեմոկրատիա է, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 14-ի համարում։*

Փաստեր կապիտալիզմի երկրներում ընտրությունների մասին, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի 3-րդ համարում։*

### 3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽՈՐԴ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ ՆԵՐԿԱ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

#### Գրականություն

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է, *առանձին գիրք, Հայպետհրատ, 1958։*

Բանաձև՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի



19-րդ համագումարի, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 5-ի համարում։*

ՕՐԵՆՔ՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 1958 թվականի Պետական բյուջեի մասին, *ընդունված Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 4-ի համարում։*

Մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերելքը (*թվեր և փաստեր*), *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի 2-րդ համարում։*

### 4. ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

#### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանությունը և կնոջ դրությունը, *Երկեր, հատոր 30, էջ 131—135, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Բանվորուհիների միջազգային օրվա առթիվ, *Երկեր, հատոր 30, էջ 519—521, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կանանց միջազգային օրվա առթիվ, *Երկեր, հատոր 7, էջ 54—55, Հայպետհրատ, 1949։*

Ընտրություններից դեպի ընտրություններ, *թվեր և փաստեր ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության և Հայկական ՍՍՌ-ի հաջողությունների մասին, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի 3-րդ համարում։*

Վերջին չորս տարում, *նյութեր մեր ռեսպուբլիկայի հաջողությունների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 24-ի համարում։*

### 5. ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ՕՐԵՐԻՆ ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ, ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

#### Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դիմումը բոլոր ընտրողներին՝ *բանվորներին և բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, սովետական ինտելիգենցիային, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 9-ի համարում։*

Սոցիալիստական լայն մրցություն ի պատիվ ընտրությունների, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 14-ի առաջնորդողը։*

### 6. ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ՍԿՍԵՆՔ ՑԱՐՆԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ

#### Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Դիմումը կոլտնտեսականներին, կոլ-



տնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողներին, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, սովետական ու գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին և բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 31-ի համարում։*

Կազմ ու պատրաստ սկսել գարնանային աշխատանքները, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 13-ի առաջնորդողը։*

### 7. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻՋԵՎ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

#### Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Միջազգային դրության մի քանի հարցերի մասին, *ելույթ Բելոռուսական ՍՍՌ գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում 1958 թվականի հունվարի 22-ին, տպագրված «Ս. Հ.»-ի հունվարի 27-ի համարում։*

---

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՕՐԱՑՈՒՅՑ

Գոյություն ունեցող ժամանակակից օրացույցը, ինչպես գտնում են, դեռևս կատարելագործված չէ։ Տարվա ամիսների և եռամսյակների տևողությունն ամենուրեք միատեսակ չեն լինում։

1953 թվականին Հնդկաստանի նախաձեռնությամբ Միավորված Ազգերի Կազմակերպությունում մտցվել է նոր օրացույցի նախագիծ։ Այդ նախագծի համաձայն տարին պետք է ունենա 4 եռամսյակ, ամեն մի եռամսյակում 3 ամիս։ Յուրաքանչյուր եռամսյակի առաջին ամիսը ունենալու է 31 օր, իսկ մնացածները՝ 30-ական օր։

Յուրաքանչյուր տարի և յուրաքանչյուր եռամսյակ պետք է սկսվի կիրակիով։ Բոլոր տարիների շաբաթվա նույն օրերը համընկնելու են նույն ամսաթվերին։ Ամեն մի ամիս իր մեջ բովանդակելու է 26 աշխատանքային օր, իսկ եռամսյակը՝ 13 շաբաթ։ Տարվա լրացուցիչ 365-րդ օրը անուն և ամսաթիվ չի ունենալու։ Նախագծում առաջարկվում է այդ օրը համարել խաղաղության, բոլոր երկրների ժողովուրդների բարի կամքի և միջազգային տոնակատարության օր։ Նահանջ տարիներին անուն և ամսաթիվ չունեցող լրացուցիչ ոչ աշ-



խատանքային օրը նախատեսված է մտցնել հունիսի 30-ից հետո։

Նոր օրացույցը ամենից ավելի նպատակահարմար է մտցնել նույն այն տարին, որը սկսվում է կիրակիով։ Այդպիսի տարիներ են լինելու 1961 և 1967 թվականները։

## «ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՔԱՂԱՔ»

1912—1914 թվականներին Բոգորոդսկի մոտ (այժմ Նոգինսկ, Մոսկվայի մարզ) կառուցվել է աշխարհում առաջին շրջանային էլեկտրակայանը («էլեկտրահաղորդիչը»), որտեղ որպես վառելիք օգտագործվել է տորֆը։ Կայանի շինարարության նախաձեռնողը եղել է ինժեներ Կլասսոնը, որի անունով էլ այժմ կոչվում է այդ էլեկտրակայանը։

Կլասսոնը ոչ միայն մասնակցել է էլեկտրակայանի շինարարությանը։ Նա այն ժամանակ աշխատանքով ապահովել է շատ պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների, նրանց, ովքեր արտասահմանից փոխադրել են «Իսկրա» թերթը, ովքեր կազմակերպել են ընդհատակյա տպարանը, ովքեր ստիպված են եղել թաքնվել ոստիկանության հետապնդումներից։

«Էլեկտրահաղորդիչի» առևտրական դիրեկտորը՝ Բուսսեն, որը մի լիբերալ գերմանացի էր, շինարարությունն անվանեց «սոցիալիստական քաղաք» և ասում էր, որ Կլասսոնը կարող է պահել ցանկացած «հակապետա-

կան հանցագործներինս և այդ բանը իրեն չի հետաքրքրում։ Կլասսոնը աշխատանք էր տալիս յուրաքանչյուր ընկերոջ։ Այստեղ աշխատել են պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներ Կրասինը, Ստարկովը, Ռադչենկոն։ Այստեղ է եկել նաև Կրժիժանովսկին։

## ՏՈՒՆ՝ ԱՊԱԿՈՒՑ

Ապակե բաժակ, վազա և այլ իրեր պատրաստելը միանգամայն հասկանալի և սովորական բան է։ Բայց ահա նրանից տուն կառուցել, դա կասկածանք է առաջ բերում։ Մինչդեռ այդպիսի տներ կան և դրանք շատ ամուր են լինում։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում ներկայումս պատրաստում են ապակե աղյուսներ, կղմինդրներ, փորակներ և ջրատար խողովակներ։ Խոնավությունն ու զանազան թթվուտները դրանց վրա չեն ներգործում։ Ապակյա ծածկոցները հնարավորություն են տալիս տանը ունենալ լավ լուսավորված ձեղնահարկ։ Ապակյա երկաթբետոնային սալիկները միջհարկային ծածկոցների համար շատ ամուր են։ Սալիկների վրայով, օրինակ, կարող է երթևեկել ներգործարանային տրանսպորտը, նրանով սարքում են նաև տների միջնորմները։



## СОДЕРЖАНИЕ

### БЕСЕДА С ИЗБИРАТЕЛЯМИ



### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ






Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ